# Թուղթ առ Երեւան

Ա. Ծառուկեան

Ա. ԾԱՌՈՒԿԵԱՆ

# ԹՈՒՂԹ ԱՌ ԵՐԵՒԱՆ

(Գ-ՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ)

ՊԷՅՐՈՒԹ, 1964

# ՄԵՆՔ ՉԵՆՔ ՄՈՌԱՑԵԼ

Մա՛յր որդեկորույս,
Որդի՛ք որբացած՝
Ուրուականների՛ն
Այդ սովահալած —
Երկրում մեր աւեր
Այն ո՞վ էր դաւել,
Մենք չե՛նք մոռացել։

Ո՞վ էր վառել
Գիշատիչ գայլին
Ժողովո՛ւրդը մեր
Ու գամել ժայռին,
Արնաքամ ու մերկ
Թէ մանուկ, թէ ծեր —
Մենք չե՛նք մոռացել։

Դո՛ւք դաշնակ շներ,
Դուք հայ գեղջուկին
Ստիպել էք չոքել
Եւ իր սիրտն ի վեր
Պարպել մաուզեր —
Մենք չե՛նք մոռացել։

Դո՛ւք էիք արիւն
Ու հուր տարածել,
Որ արիւնարբու
Սեւ մոլո՛խը ձեր
Իր մեծ աւարից
Ձեզ պատառ գցէր —
Մենք չե՛նք մոռացել:

Որ կը դառնայիք
Ֆաշիզմի ռազմի
Արիւնածարաւ
Շներն անազնիւ,
Արնոտ բոքեռնու
Թաթը կը լիզէք,
Մենք չե՛նք մոռացել:

Մենք չե՛նք մոռացել,
Որ պիտի ջնջենք
Երկրից այսուէտ՝
Սեւ ֆաշիզմի հետ՝
Նաեւ հե՛տքն իսկ ձեր —
Ո՛չ,
Չենք մոռացել:

ԳԷՈՐԳ ԱԲՈՎ

(Կարմիր Մարտիկի Գրադարան, Թիւ 7.
Հայպետհրատ, Երեւան, 1944)

Այս ուշ գիշերին,
Աշնան տխրակոծ հողմերի միջով
Ու բարակ մաղուող անձրեւների տակ,
Գնում է ահա,
Մի քայլամոլոր ու հիւանդ տղայ.
Անցնում է խոնաւ ու թաց մայթերից
Գլխահակ, տրտում,
Եւ նրա սրտի մռայլ խորքերում
Ծփող որպէս մուրճ ծանր մի թախիծ...

Գնում է խոնաւ ու ցուրտ մայթերով
Անընկեր, մենակ,
Ձեռները անփոյթ գրպանների մէջ,
Ասես՝ իր յոգնած ուսերի վրայ
Անտեսանելի մի ծանր կապար,
Մի չար աստուծոյ ինչ որ մութ անէծք...
Ոխակալ բախտի
Ճակատագրային հսկայ մի բռունցք...

Նրա աչքերի փոթորկած ծովում,
Որպէս թեւաբախ ու մեռնող թռչուն,
Մի անհաս կարօտ.—
Հեռաւոր գարնան նետուած պաղատանք,
Կապոյտ լեռների ու ջերմ արեւի
Որպէս յաճախանք՝
Անհա՜ս մի կարօտ հայրենի երկրի։

Երազում է նա իր երկրի մասին,
Ինչպէս կարօտած մայրը իր զաւկին,
Ինչպէս պապակած հողը անձրեւին,
Ինչպէս սրսփող հիւանդն արեւին,
Ինչպէս ոգեվար կռունկը կեանքին՝
Երազում է նա իր երկրի մասին։

Օ՛, հիմա այնտեղ շէն երդիկներ կան
Եւ զուարթաձայն երգեր ու ծիծաղ,
Հողից դուրս պայթած սերմերի նման
Նոր սերունդների կեանքը կայ չքնաղ,
Եւ մանուկներ կան հազար ու հազար,
Երազ աչքերով անթիւ մանուկներ՝
Ապագայի դէմ ժպտուն ու պայծառ:

Հեռաւոր երկրի կարօտը սրտին
Ու լուսապայծառ երազն աչքերում,
Աշնան դալկացող ստուերների հետ
Ու բարակ մաղուող անձրեւների տակ,
Ինքն էլ երերուն, մի տարտամ ստուեր՝
Ո՞վ է նա — մոլա՛ր ու անտէր տղայ,
Ի՞նչ է նա — սուզուած նաւի մի խլեակ,
Ո՞ւր է նա — օտար ու խորթ մի աշխարհ,
Ի՞նչ ունի — ո՛չ հայր, ոչ տուն, ոչ զաւակ,
Ոչ մի կտոր հող անծայր աշխարհից
Եւ ոչ մի երդիկ այս երկնքի տակ.
Անվերջ մաքառող պայքարում հացի,
Չունի նա ոչինչ՝ վշտերից բացի...

Այսպէս հողմավար ափունքից ափունք
Քշուող բիւրաւոր խլեակներից մին՝

Այդ ե՛ս եմ ահա,
Որ գնում եմ թաց ու ցուրտ մայթերով
Եւ ատամներիս տակ սիրտս սեղմած՝
Մտածում եմ քո մութ երգի մասին,
Օ՛ Գէորգ Աբով...

Հայրենի Երկրից դու ինձ ես յիշել,
Ինձ գիր ես գրել բառերով հատու
Եւ բառերի մէջ դրել ես կրակ,
Ու կրակի հետ թոյն ու մոլեխինդ՝
Եւ ասում ես ինձ.—
Քեզ չե՛մ մոռացել.
Դու ուզում էիր սարքել պատարագ
Եւ զոհասեղան վասն հայրենեաց,
Դու ուզում էիր
Նուիրել նրան արիւնդ կարմիր,
Դէ՛հ, եղիր պատրա՛ստ.
Հայրենիքն էլ քեզ տալիս է ահա
Թոյն ու մոլեխինդ.
Քեզ չի մոռացել քեզ չի մոռանայ,
Ու կը հալածի քեզ անհաշտ ոխով՝
Մինչեւ մեր պայծառ արեւի ներքոյ
Անհետ չքանայ յիշատակը քո...

Ես չեմ ատում քեզ, անէծք չեմ տալիս,
Իր խենդ արիւնի կարկաչուն երգով՝
Հայրենակարօտ ու խոցուած հոգիս
Չունի քեզ հանդէպ, օ՛ Գէորգ Աբով,
Ոչ քէն, ոչ բողոք,
Այլ բութ մի կսկիծ, անանուն մի ցաւ
Եւ որպէս կարիճ խայթող մի մորմոք...

Եւ ինքս ինձ հետ դեռ միտք եմ անում,
Թէ ո՛նց է եղել — եղե՞լ է արդեօք —,
Որ հրդեհներում կիզուած Ֆետային,
Չարիքի հանդէպ այնչա՛փ անողոք,
Տկարների դէմ անչափ կաթոգին
Մեր ջա՛ն Ֆետային,
Իր եղբայրների հանդէպ հարազատ
Լինի այնպէս չար եւ անմարդկային,
Լինի այնպէս վա՛տ...

Այդ ե՞րբ է եղել,
Որ հայ գեղջուկին ստիպել են չոքել
Եւ իր սիրտն ի վեր
Պարպել մաուզէր։
Ե՞րբ է պատահել արարքն այդ դժխեմ,
Հայը հայ մարդկին ե՞րբ է կոտորել,

Հայն հայի արեան ե՞րբ է ծարաւել.
Զառանցա՞նք է սա թէ մի սեւ կատակ
Եւ կամ պատմութեան յատակից պղտոր,
Գորշ ու լպրծուն դիրտը խառնելով
Դուրս հանուած մթին լէգէնտի կտոր...

Հայը հայ մարդին ե՞րբ է կոտորել,
Օ՛ Գէորգ Աբով.—

Թէ մութ օրերին,
Փոթորկոտ ու սեւ, այն սեւ օրերին,
Բաբելական խուլ խառնակոյտի մէջ
Մեկնել է անմիտ, մի յիմար գնդակ
Եւ անմտօրէն խփել մի հայի, —
Թէ մի դազազած, անօթի հայդուկ
Դարձել է քաղցից խելառ աւազակ
Եւ անասնական սուր մոլուցքի մէջ
Հրացան պարպել հարազատի դէմ,
Կողոպտել նրա պատառը վերջին
Եւ կուլ գնացել անողոք սովին
Ինքն էլ իր հերթին, —
Թէ փրփրակուտակ ալիքների մէջ
Յեղափոխութեան կատաղած ծովի
Ու պայքարի մէջ կեանքի ու մահի

Մի եղբայրասպան կռիւ է եղել
Ցաւէտ ողբալի, —
Ինչո՞ւ որոնել, որպէս նեխած լէշ,
Տասնամեակների ներքեւ պատանքուած
Կռիւն այդ տխուր ե՛ւ անմիտ, ե՛ւ գէշ,
Ու նետել, որպէս մարտի հրաւէր,
Օտարութեան մէջ հայրենի երկրի
Կարօտով մեռնող հարազատներին...

Եղել է հնում թէ բիրտ ու հարբած
Ինչ որ մաւզէրիստ,
Չի՞ եղել միթէ եւ մի խեւ Աւիս,
Որ մեծ Լենինի պատգամին անտես՝
Երեւանեան մութ բանտի նկուղում
Կացինահարման սարքել է հանդէս...
Դո՞ւրս ժայթքել նորից հին ոխը ժահրոտ
Եւ, որպէս արջասպ
Միմեանց երեսին արձակել ամօ՞թ...
Յիշե՞լ՝ ո՛նց մեռաւ մարտիկն Համազասպ,
Յիշե՞լ ... յիշե՞լ դեռ ... ինչո՛ւ, երբ արդէն
Ծանր պատմութեան գլանը հարթիչ
Թաղել է անդարձ ամէն ոխ ու քէն...

Եւ ինչո՞ւ քամուն չյանձնել նորից՝
Ինչ բերել էր մեզ սեւաբախտ քամին,

Ու եղբայրների միջեւ սրտակից
Ցանել պայքարի սերմներ մթին.
Ինչո՞ւ չպոկել մեր կանաչ արտից
Բոյսերն այդ գաղիր, որպէս մոլախոտ,
Եւ անգէտ մնալ, թէ կռիւն այդ հին
Մեր դաժան բախտի խաղն էր արիւնոտ
Եւ ճակատագրի քրքիջը վերջին,
Նետուած ուժաքամ մեր ժողովուրդի
Անծայր սուգերից դեռ թաց աչքերին...

Գուցէ եւ մի խենդ եւ գինով աստուած
Կամեցել է դեռ, որ լինի գրուած,
Թէ մի ողջ երկիր յանձնել են սրին,
Մի ողջ ժողովուրդ դրկել անապատ,
Զարդել անխնայ ե՛ւ մանուկ, ե՛ւ ծեր,
Լլկել անպատիժ կոյս թէ նորահարս,
Պղծել աներկիւղ ե՛ւ խաչ, ե՛ւ խորան,
Ու կէսը նրա — Միլիո՛ն մի կեանք —
Նետել են մահուան.
Որ կէսը ապա ծաղկի ու չէննայ,
Բայց իր նորաստեղծ երկիրը թրջուի
Էլի՛ մի անգամ հայի արիւնով
Եւ հայի՛ ձեռքով...

Կարող են մարդիկ խախտել լեռներին
Եւ բազկի ուժով սանձել գետերին.
Բայց ո՞վ է կարող
Ժամանակների վճիռը եղծել
Եւ դիւցազնութեան կապոյտ երկնքում
Շողացող աստղին վարագոյր քաշել...
Դաշնակ չների՛ն...
Բայց ո՞վ են նրանք, չներն այն բոլոր,
Որոնց սրբազան յիշատակն ի վեր
Մի քերթող Արով — բառերի որսորդ —
Եկել իր թղթէ կապարճն է պարպել...

Շնե՞ր են նրանք, մարտիկներն այն սուրբ,
Հողի կարօտով հող դարձած մարդիկ,
Որ սիրտը իրենց, որպէս պայթող ռումբ,
Եւ կեանքը իրենց, որպէս խօլ մրրիկ,
Զարկել են Հայոց դաժան լեռներին,
Եւ թշնամու դէմ լեռնացած քէնով՝
Քայլել են կեանքից ու հասել մահին...

Շնե՞ր են նրանք, հերոսներն այն վեհ,
Մեր ազատութեան վաղ այգարացին
Հէքեաթից յառնող վիշապների պէս
Եւ հէքեաթ դարձած ոգիներն ահեղ.
Նրանք, որ խաւար ժամանակներում
Շրջել են վառուող խարոյկների տեղ,
Որպէսզի մթին Հայ խրճիթներում
Դարերով մարած լոյսը պլպլայ,
Եւ արդարութեան ծիրանի գօտին
Նորից կամարուի Հայ երկրի վրայ,
Որպէսզի խրուի գութանը անշեղ
Մեր սեւ հողերի չարչարուած կողին
Եւ ակօսներում, տաք քրտինքի տեղ
Մաճկալի ճակտից չթորայ արիւն.
Որպէսզի արդար հացի սեղանին
Աղօթքի փոխան չլինի անէծք,

Եւ արարչութեան լուսինը դեղին
Մեր մանուկների հեւքոտ երազում
Երկնքից կախուած չթուայ լայն վէրք…

Ծնե՞ր են նրանք … Եւ չո՞ւն էր արդեօք
Եարի փոխարէն ցուրտ զէնքը գրկած
Խրոխտ Ֆետային — մարմնացած բողոք,
Ու համակ կսկիծ, ցասում ու վրէժ,
Որ անհաւասար մարտի էր ելել
Ընդդէմ արիւնռուշտ Սուլթանի խենէշ
Եւ ընդդէմ Ցարի, ընդդէմ Խաների
Ու բոլո՛ր, բոլո՛ր բռնակալների…

Ծնե՞ր են նրանք … Եւ չո՞ւն էր միթէ
Մղձաւանջներում մղձաւանջ դարձած
Սասնոյ վիհերի ոգին Երկաթէ…
Եւ չո՞ւն էր միթէ
Հրայրը Թախծոտ — գաղափարի՛ սիւն,
Եւ չո՞ւն էր արդեօք որպէս աշտանակ
Ռումբից հրկիզուած հէ՛ք Բարկէն Սիւնին,
Թէ՝ ազատութեան բագինի առաջ
Ընկած Նահատակ…

Օ՛, չո՞ւն էր, չո՞ւն էր
Սերոբը պարթեւ, Գէորգը առիւծ,

Մակար ծերունին՝ չնչող մագաղա՛թ.
Օ՛, չո՞ւն էր Մուրատն իր ձիու վերեւ,
Ռոստոմը խոժոռ՝ կաղնի՛ հաստաբմատ,
Եւ Քրիստափորն՝ արդա՛ր ուժանակ,
Ծո՞ւն էր Զաւարեանն՝ անբի՛ծ ինչպէս լոյս
Թէ մեր աշխարհում մարդացած Յիսուս...

Ու լեգէնդական Թափօրը հսկայ
Համեստ, անանուն մեր հայդուկների,
Արեան ու վշտի ծովերից անցած,
Լեռների լանջին եւ մութ ձորերում
Անթաղ մնացած մեռելներն ամէն,
Կախաղանների մռայլ կատարին
Եւ արհաւիրքի խուլ զնտաններում
Զոհերն անհամար.
Ու նահատակներն այն լուսապսակ
Հայոց պատմութեան անդունդներն ի վար,
Բոլորը նրանց չների վոհմա՞կ...

Ու դեռ դպրութեան այգեստաններից
Փոխան երազի՝ դժո՛խք չալակած,
Փոխան տաւիղի՝ չեփորով պղինձ
Արի՛ւն, արհաւի՛րք, կոտորա՛ծ երգող
Քերթողները վէս, —

Փոթորկամռունչ, խօլ Սիամանթօն,
Եւ քաղցրաթախիծ Վարուժանը հեզ,
Վաստակը նրանց չների թողօ՞ն...
Մարգարէաշունչ երգերը նրանց
Շների կաղկա՞նձ...

Օ՜ հիմա, հիմա,
Կարող է նրանց ոգին անհանգիստ
Յանկարծ ծառանալ երկնքի դիմաց
Որպէս վիրաւոր գամբռ մի հսկայ,
Բանալ աստղերին իր սիրտը մռայլ,
Ու ցաւից կանգնել զոյգ ոտի վրայ
Եւ անվերջ ոռնալ...

Օ՜, հիմա, հիմա,
Եղեռնի կարմիր անապատներից
Կարող է անթաղ ու չոր մի կմախք
Շարժուել դէպի վեր, աստղերի ճամբով,
Հասնել երկնքին,
Եւ սեղների վրայ Յարդգողի
Մի ահեղիմաստ համերգ փոթորկել...

Օ՜, հիմա, հիմա,
Կարող է երկրի սիրտը պատառել,
Լինել տեղաշարժ,

Եւ ընդերքներից հայոց աշխարհի,
Որպէս յայտնութեան քստմնող միրաժ,
Դուրս խուժել յանկարծ
Դաշնակ շների մի անհուն վոհմակ...

Օ՛, հիմա, հիմա,
Կարող է նոյնիսկ,
Որ դաշունահար ու մերկ մի մարմին
Անսանձ հողմերի շեփորը գողնայ
Եւ քար մարդկութեան քարեղէն խղճին,
Անէծքի շունչով բիրտ ու անխնայ,
Մի վերջին անգամ էլի՛ որոտայ
Խաբուած իր հոգու կսկիծը խորին...

Կարող են մարդիկ խախտել լեռներին,—
Բայց ո՞վ է կարող
Վճիռը եղծել ժամանակների,
Եւ դիւցազնութեան կապոյտ երկնքում
Շողացող աստղին վարագոյր քաշել...

Արևան ու ցաւի ծովերից անցած
Մեր հազարամեայ հին նաւը խարխուլ
Մի վերջին անգամ առագաստ պարզած
Եկեր է ահա այս ափերին փուլ․
Քանի՜ մրրիկներ ծեծել են նրա
Կայմերը հաստատ, կամուրջներն ամուր,
Եւ որպէս փետուր՝
Նետել մոլեգնած կոհակների վրայ,
Զարկել խութերին,
Ու զահանդական, խոր անդունդների
Խաւար երախին…

Եկել են մեզ դէմ
Վոհմակներն անթիւ մութ խուժանների,
Եկել հիւսիսից, եկել հարաւից,
Տափաստաններից եկել են ծարաւ
Ու մեր մաքրափայլ, պայծառ ջրերին
Խառնել են նեխանք, արիւն ու չարաւ.
Արտերին իջել՝ հանց անկուշտ մարախ,
Գիւղերին նստել՝ որպէս պղծութիւն,
Ու չի մնացել եւ ոչ մի օջախ,
Ուր մեր հարսների ճակատին մաքուր
Շնագայլերի գարշահոտ դնչից
Նարօտի վրայ չլինէր սեւ մուր...

Երկիրը մեր չէն դարձել էր դամբան,
Ու դամբանի մէջ ժողովուրդը մեր
Եղել անկշտում սրերի յեսան.
Ապրում էր ահով, կէս-մեռել կէս-ողջ
Վեց ստրկութեան անհատնում դարեր.
Կեանքը նրա մէջ լոկ կայծ էր դողդոջ
Եւ նա աշխարհում թափառող ստուեր,
Տառապանքների ներքեւ անհաշիւ
Կորցրած ընդմիշտ ե՛ւ ինչք ե՛ւ պատիւ..

Եւ դամբանների անծայր խաւարից,
Ցուրտ մոխիրների պատանքը թօթուած,

Զարթնել է յանկարծ մի սիրտ կենսալից.
Տրոփել է նա կչռույթով առողջ,
Եւ նրա արեան ցնցող զարկերից
Շնչել է մեռեալ երկիրը ամբողջ.
Թմրած հոգիներն առել են խոյանք,
Սարուկը խոնարհ դարձել է մարտիկ,
Պայքարը ազնիւ նկատել պարծանք
Եւ աղաղակել — Մա՛հ կամ Հայրենիք...

Մի սիրտ է խփել մոխիրների տակ,
Հողմերի դիմաց բացուել մի դրօշ,
Թափուել է արիւն, սուլել է գնդակ,
Լսուել սուրերի կայծակնադոռ չաչ.
Ոսոխը վատթար ջարդել է անվերջ,
Մարտիկներն անվախ քայլել են առաջ,
Կռուել լեռներում ու վիհերի մէջ,
Նորեր են եկել ինկածների տեղ,
Երկիրն է դարձել զալարուող բոունցք,
Արիւնը դարձել զայրագին հեղեղ,
Հովիտները խոր լճացած արցունք.
Դժո՛խքն է փլել մեր երկրի վրայ
Ու հողն է պայթել որպէս չէկ կաթսայ...

Հասել են ապա հեղեղներ տղմուտ,
Եւ մութ ամպերի արանքից դաժան

Բացել երկինքի մի կտոր կապոյտ ·
Յօյսեր են ծաղկել եւ շունչը գարնան
Խոստացել երկրին մի բեղուն ամառ,
Արցունքն է սրբել ժողովուրդն հայոց
Եւ լծուած հերկին ազնիւ ու արդար,
Յառել է աչքերն օրերին գալոց·
Եւ հաւատացել՝ թէ իր վէրքերին
Հպում են ահա մատներ բարեգութ,
Թէ եկել, հասել է Սամարացին,
Կը լինի շուտով տօն ու այգեկութ,
Հնձանների մէջ կը խայտայ գինին,
Ընդմիշտ կը չքուի ստուերը մահուան
Ու լեռների վրայ եւ մեր դաշտերի՝
Նորից կը ժպտայ պայծառ ապագան...

Յօյսեր են ծաղկել ... կտոր մի կապոյտ...
Հօֆ եւ Վէստենէնկ ... Բարենորոգում...
Կտոր մի կապոյտ.—
Ուղեղների վրայ, սրտերի վրայ՝
Դաշնագրերի փոշեթաթաւ կոյտ.
Հոգիների մէջ՝ յոյզերի փեթակ.
Ու երակներում ցնծութեան կրակ.—
Կը լինի շուտով հարսնիք ու ծիծաղ,
Անապատը չոր կը լինի պարտէզ,

Ողբը հնօրեայ՝ սիրոյ անուշ տա՛ղ…
Կտոր մի կապոյտ … Յոյսը՝ կը լինի
Ձմռայ մէջ բացուած վառման վարդենի…
Կտոր մի կապոյտ … Եւ կապոյտի վրայ՝
Ինչպէ՛ս … ինչքա՛ն շուտ …
ա՛հ, ինչպէ՛ս,
ինչպէ՛ս
Յեղակարծ փայլա՛կը Մեծ Եղեռնի…

. . . . . . . . . . .

Յիշո՞ւմ ես, Արամ.— Կռիւ էր նորից,
Լիզում էր աշխարհն հրդեհը քանդիչ,
Տուել էր կեանքին մահը մի նոր կից
Ու սիրտը մարդուն դարձրել արճիճ.
Նորից բանակներ բանակների դէմ
Նորից բռնութեան խելագար արշաւ.
Իսկ մեր հողերում, սոխը խարդախ
Նիւթել էր ծածուկ ահաւոր մի դաւ,
Բացել մեր առաջ անհուն մի դագաղ…

Ու կարաւաննե՛ր՝ անվերջ ու անծայր,
Անդաստաններում՝ արհաւիրք ու սուր,
Քաղաքները չէն գետնին հաւասար
Ու ճամբաներին՝ դանկերի բլուր…
Ոռնում էր խուժանն անկուշտ ու վայրագ,

Եւ իր սեւ հողուն ու Եղեռնի վրայ
Որպէս անթափանց խաւարի վերմակ՝
Փռուել էր նեխած խիղճը մարդկութեան…

Յիշո՞ւմ ես, Արով.— Եղել է մի օր,
Անցած ու գալիք, օրերից բոլոր
Անջատուած մի Օ՛ր.
Ապրիլ է եղել, դաշտերում՝ ծաղիկ,
Եւ մի հեռու տեղ, մի գետի ափին,
Եղել է արեան կարմիր բաղանիք…
Եղել է մի Օ՛ր.
Եւ արաբական տաք աւազներում՝
Եղել Ռաս-իւլ-Այն, եղել է Դէր-Զօր.
Յիշո՞ւմ ես, Արով.—
Եղել է Դէր-Զօր…

Յիշո՞ւմ ես, Արով.—
Թէ եղաւ մի սեւ ու փառութեան օր,
Ժողովուրդը մեր մորթուող ոչխար,
Ապա եւ նորից ինձ հետ միասին,
Ճակատները վա՛ր՝
Համբոյր տանք բոլոր, բոլո՛ր շներին,
Օ՛, Գէորգ Արո՛վ,
Որ մեր աղարտուած ու անսուրբ ճակտից

Անմար վրէժի սրբազան հրով
Գարշ ստրկութեան ամօթն այրեցին...

Եւ փա՛ռք չներին.
Նրանց՝ որ մահով յաղթեցին մահուան
Եւ մահից առաջ թշնամու ճակտին
Որպէս պղծութեան անմոռաց խարան
Արեա՛մբ գրեցին՝
Թէ մահն է միշտ մէկ եւ ամենայն տեղ,
Թէ մարդը կեանքում կը մեռնի մի հեղ,
Թէ հազար երնէկ ու բիւր երանի
Նրա՛ն՝ որ ազգի սիրոյն կը զոհուի...

Ու նորէ՛ց պատիւ եւ փա՛ռք չներին՝
Վասպուրականից մինչեւ Մուսա Լեռ,
Ու մինչեւ Ուրֆա եւ Գարա՛հիսար,
Զոք–Մարզըւանից մինչեւ Տաւրոսներ,
Փա՛ռք մեր երէկի, փա՛ռք մեր ներկայի
Ու դեռ գալիքի բոլո՛ր չներին...

Յիշո՞ւմ ես, Արամ.— Նահանջ էր այլ տեղ,
Ու լեղապատառ քայքայման խուճապ.
Եւ որպէս խրտնած ու գինով նախիր
Ռուսաց զօրքերի փախուստն հապշտապ։
Նետել էր Լենինն իր պատգամը.— Տո՛ւն,
Ողջո՛յն տառապող երկրին ու մարդուն,
Ողջո՛յն ոսոխի՛ն, ողջոյն պարտեալի՛ն,
Ողջո՛յն բոլորին եւ դարձ՝ — դէպի տուն...

Յիշո՞ւմ ես, Արամ.—
Գալիս էր նորից, արիւնոտ դնչով

Նոյն հրէշը սեւ ժանիքը սրած,
Որպէսզի անզուսպ թափով մի վերջին՝
Վերջին բեկորին տայ վերջին հարուած...

Եղե՞լ է արդեօք դարերի խորքում
Աւելի մթին, անյոյս ճգնաժամ՝
Երբ օրհասական հայոց աշխարհի
Սիրտը վիրաւոր ու արիւնաքամ,
Յաւիտենութեան վիհերից առկախ՝
Դադարեց մի պահ...

Յիշո՞ւմ ես, Աբով.— Երկինքն էր սառել,
Չկար բարեգութ եւ ո՛չ մի աստուած.
Ու երկիրը մեր՝ կենդանի մեռել,
Ընկել բորենու կլափի դէմ բաց...
Ու ճակատագրի մատեանում անպէտ
Մի ձեռք անողոք
Գրել էր արդէն տխուր վերջակէտ...

Երկինքն էր սառել ու չկար Աստուած...
Բայց ահա՛, ահա՛, հէքեա՞թ թէ հրաշք,
Ծառացաւ մի մարդ,
Հրաշքից փախած ու հրա՛շք մի մարդ.
Կանգնեց նա դաշտում մեր Արարատեան,
Դիակների մէջ եւ ագռաւների,

Եւ հաւատքն արած պողպատեայ վահան,
Եւ սէրն հայրենեաց մի շեփոր ռազմի,
Սոված, սարսափած մարդկանցից վհատ
Դարբնեց մի բանակ,
Եւ որպէս ոխից շիկացած երկաթ՝
Խփեց ոսոխի ճակատին անարգ...

Յիշո՞ւմ ես, Աբով, թէ ո՞նց ապրեցան
Հայոց աշխարհի զարմերը վերջին,
Երբ չկար Աստուած, երկինքն էր դաժան.
Յիշո՞ւմ ես կրկին,
Ահեղ Բէլի դէմ ծառացող Հայկին
Եւ նրա Թոռան.
Թո՞ռն էր Հայկի, զա՞րմը Վարդանի,
Դուի՞թն էր մանուկ,
Հայոց լեռներում յայտնուած ոգի՞...
Յիշո՞ւմ ես նրա ճակատը պայծառ,
Անունն անթառամ —
Մանուկեան Արամ...

Յիշո՞ւմ ես ապա.
Կռիւ էր, երգ էր, խաղ էր մահի հետ,
Թշնամին՝ յոխորտ ճակատների վրայ,
Եւ ինչպէս պրկած աղեղի սուր նետ՝

Նրա թիկունքին
Սեպո՛ւհն էր խիզախ եւ իր այրուձին...

Յիշո՞ւմ ես ապա.
Արաքսի ափին վերջալոյս էր վառ
Եւ բլուրների լանջին հեռակայ՝
Սուինամարտի բոցկլտող անտառ.
Դաշտում վիրաւոր ձիերի խրխինջ,
Հովտում՝ մորթուող թշնամու բառաչ,
Եւ խրամների երախից քանդիչ
Գնդացիրների բոցավառ չառաչ:

Յիշո՞ւմ ես ապա.
Փշրել էր նորից իր ժանգոտ շղթան
Արտաւազդների զայրոյթը հզօր.
Քանդել էր նորից թումբերը համայն
Հայկազունների ոգին թեւաւոր.
Եւ ատամների կրճտող քէնով,
Որպէս վրնջող ու կատաղած ձի՝
Խածել էր շեղբից մահուան մանգաղի...

Յիշո՞ւմ ես ապա.
Դուրս էին խուժել առասպելներից
Նախահայրերի ոգիներն հսկայ
Ու եղել կռուող զօրքին զինակից.—

Հասել էր Սասնոյ Դաւիթը մրրիկ,
Ու եղել մարտում
Աննահանջ թափով յաղթող Անդրանիկ.
Եկել էր որպէս մի նոր Գայլ–Վահան
Նիկո՛լը Դուման.
Եկել էր Մուշեղը Մամիկոնեան,
Պահած ճերմակ ձին,
Պահած եւ հոգին, պահած եւ անուն,
Ու փոխած միայն, միայն ազգանուն
Եւ դարձած Մուշե՛ղ մի Աւետիսեան...

Եւ ինչպէս Մանուէլ վէրքերով առատ,
Մահճից եղկ մահուան թմբիրը թօթուած՝
Թամբել էր իր ձին ու դարձել Մուրատ
Մարտիկ մի ահեղ,
Որպէսզի անփայլ մահով չմեռնի
Եւ թողի պայծառ քաջութեան անուն
Սրտում մեծագործ իր ժառանգների...

Զիջե՞լ նրանց — Դաշնակ Շներին,
Եւ դիւցազնութեան լոյս ոլորտներում
Շողացող աստղին վարագո՞յր քաշել.
Զիջե՞լ. ինչո՞ւ,
Թաղել, ուրանալ անցեալ մի չքեղ
Ու դառնալ գնչո՞ւ...

Յիշո՞ւմ ես ապա.
Երաշտ մի հովտից, անանուն դաշտից,
Գողպատ ու պողպատ
Դարերին նետուած կամուրջ մի հսկայ.—
Օ՛ Սարդարապատ...

Յիշո՞ւմ ես ապա.
Սրտերի գրոհ ու կամքի հեղե՛ղ,
Ոգու ուրակա՛ն,
Ու մետաղացած բազուկներ ջրդեղ՝
Հրաբուխներից տեղահան անտա՛ռ
Ու երկնքի դէմ գալարուող թաթա՛ռ —
Յիշո՞ւմ ես ապա՝
Մոռացուած մի գիւղ, մի խուլ կայարան —
Ղարաքիլիսա
Ու Բաշաբարա՛ն...

Քաջալանջ Հայկից թող մինչեւ Տիգրան,
Ու պերճ Տիգրանից մինչ Կարմիր Վարդան,
Ու մինչեւ Գագիկ ու մինչեւ Թորոս,
Մինչեւ Դաւիթ Բէկ
Եւ մինչեւ, մինչեւ Բաղրամեա՛նն հերոս,
Վե՛ր կենան մի հեղ,
Հողի տակ ապրող մարտիկները մեր

Վեր կենան մի հեղ,
Եւ Արարատից մինչ անհաս երկինք,
Ու երկինքներից դեռ մինչեւ աստղեր,
Ու մինչեւ եթեր,
Ու մինչեւ Աստուա՛ծ,
Ու համբո՛յր տան ձեզ,
Ու տան ձեզ պատի՛ւ,
Տան փա՛ռք ու պարծանք
Հէ՛յ Սարդարապատ,
Ղարա՛քիլիսա՛,
Հէ՛յ Բաշաբարան...

Ցիշո՞ւմ ես տղա.
Արիւնից ծորած երիզ մի ԿԱՐՄԻՐ,
Երկնքից պոկուած կտոր մի ԿԱՊՈՅՏ,
Հասուն հասկերի շող ՆԱՐՆՋԱԳՈՅՆ
Եւ վեց դարերի խաւարի վրայ՝
Դրօշ եռագոյն...

Յետոյ Նոյեմբեր, ապա Փետրուար,
Նորից արցունքի եւ արեան տարափ,
Մինչեւ մոլեգնած Ջրերից վարար
Երկիրը հիւանդ խարխափ առ խարխափ
Հասաւ իր կայքին,
Ու պարզեց թեւերն իր ցրտից կարկամ
Բորբ արեգակի դէմ Խորհրդային...

Ո՞վ չի խաբել մեզ,
Ո՞վ չի մօտեցել մեր խորունկ վէրքին
Որպէս երկնառաք բարի յարալէզ,

Եւ ո՞վ իր անյագ ոսկու ծարաւին
Չի տուել յագուրդ մեր տաք արիւնով,
Ո՞վ չի խաբել մեզ...

Ո՞վ չէր խաբել մեզ.
Ու դեռ կխաբաց կարմիր դրօշին
Թէ հիասթափուած սիրտը մեր վհատ
Առաջին պահին չի տուել հաւատ,—
Թէ հազար անգամ օտարից խաբուած
Ու հազար ձեռքից վէրք առած հազար
Մեր սրտում եղել է մթին կասկած՝
Թէ դրօշների ետեւ կարմրավառ
Գալիս է նորից նոյն Արջը նօթի,
Լօբանովների եւ Նիքօլայի
Սուրերը դահիճ,
Որպէսզի նորից, ինչպէս հանրակին
Արձակի քրքիչ՝
Թէ սիրում է մեզ, սիրում հայերին
Եւ սիրում այնքա՜ն, եւ սիրում այնպէ՜ս՝
Որ տալիս է մեզ դրախտը բաժին,
Իսկ այս աշխարհում դեռ տալիս է մեզ
Մի մե՜ծ Հայաստան... Բայց առանց հայի—
Թէ չենք կամեցել մենք լինել անհետ.—
Թէ չենք կամեցել կորչել առյաւէտ —

Թէ մի հեղ էլ մե՛նք եղել ապերախտ՝
Մերժել ենք գնալ երկինք ու դրախտ,
Գտել՝ մեր նախնեաց հողը կենսատու
Քան երանաւէտ դոգն Աբրահամու,—
Չե՛նք ուզել սուրուկ լինել օտարին
Հաւատալ նորից ու խաբուել կրկին,—
Եղբայր է հիմա աշխարհը բոլոր
Ու մե՞նք ենք միայն, մե՞նք ենք մեղաւոր...

Անցել է արդէն լրիւ քառորդ դար
Ու երկիրը մեր
Կարմիր դրօշին դարձել է ընկեր,
Դարձել է եղբայր:
Նետել է հիւսիս բազուկն իր հուժկու
Մուրճին, մանգաղին,
Ճակատը պայծառ, նայուածքը հատու
Ու կանգնել կրկին:
Տեսնում ենք ահա, խինդով անսահման
Թէ չի՛ խաբել մեզ դրօշը կարմիր,
Թէ բացուել է դարը երջանկութեան,
Եւ առագաստները մեր հողմալիր
Խաղաղ ջրերի վրայ հեզասահ
Եւ զեփիւռների շնչով այգային,

Նաւը նայիրեան տանում են վստահ
Վառ գալիքների երազ ափերին։

Դիտում ենք յոյզով ու վառ կարօտով,
Ափին մոռացուած մենք ուղեւորներ՝
Թէ ե՞րբ կը լսուի մեր կանչը խռով,
Կը լսուի անհուն կարօտանքը մեր,
Բարձրադոյն կայմից հսկող նաւաստին
Կը տայ ահազանգ՝
Թէ հորիզոնում մշուշապատանք
Նաւաբեկեալի կայ դողդոջ հրթիռ,
Խեղդամահների զանգուածներ մթին
Եւ կան երկնքին պարզուած ձեռներ,
Թէ հարկ է մեկնի նաւը իր հետքին
Եւ դառնայ նորից իր բեկորին տէր...

Դարձել ենք հիւսիս,
Ափին թողլքուած մենք ուղեւորներ,
Եւ պայծառ աստղին ողջոյն ենք տալիս.
Բայց ողջոյնի հետ, ողջոյնից առաջ,
Արժա՞ն է մեզի, արժա՞ն է մարդուն՝
Նզովք հոլովել իր մեռելներին,
Անցեալն իր նետել որպէս փտած քուրջ,
Արժա՞ն է աստղին վարագոյր քաշել,

Ու վայե՞լ է դեռ, Յարութեան տօնին
Խաչեցեալների շիրիմը պղծել...

Անցել են նրանք արիւնի ճամբով
Որպէս խաւարում լուծուած ճառագայթ,
Անցել են նրանք, օ՛, Գէորգ Արով,
Տեսած հազար դաւ, հազար որոգայթ,
Եւ պատմութեան դորչ պաստառի վրայ՝
Դարձել պատմութիւն ու դարձել հէքեաթ:

Անցել են նրանք, Շները Դաշնակ,
Յաւերժապայծա՛ռ փառքի ճամբերով,
Անցել են նրանք վոհմակ առ վոհմակ,
Եւ Հայաստանի երկնքից ահա՝
Գլուխները զոյգ թաթերի վրայ,
Ոգեղինացած սփինքսներ որպէս,
Անհուն կարօտով ու անհուն սիրով
Տե՛ս, դիտում են քեզ, օ՛ Գէորգ Արով,
Եւ դիտում են մե՛զ...

Կարո՞ղ ես մի պահ
Խզել արմատից բունը մեր ծառի,—
Թէ ունենք հիմա Կարմիր Նոյեմբեր՝
Փա՛ռք իր արեւին,

Թէ ունենք զուարթ ու ցնծուն Երկիր՝
Փա՛ռք իր հասակին.
Յիշո՞ւմ ես մի պահ, օ՛ Գէորգ Աբով,
Թէ նա կը լինէ՞ր,
Կը լինէ՞ր արեւ, կը լինէ՞ր երկիր,
Կը լինէ՞ր արդեօք կարմիր Նոյեմբեր,
Ու դեռ կը լինէ՞ր ժողովուրդը մեր,
Թէ մշուշապատ
Եւ արիւնազանգ անցեալի ֆոնին՝
Չլինէր չքե՛ղ մի Սարդարապատ...

Ու պիտի ջնջէ՛ք
Երկրից առ յաւէտ
Սեւ ֆաշիզմի հետ
Նաեւ հե՛տքն իսկ մեր.—
Բայց սեւ ֆաշիզմին յաղթելու համար
Ունէք դուք արդէն
Կուռ բանակների շարքեր անհամար։
Ունէք յաղթութեան
Վառ դրօշ պարզած քաջ զօրավարներ.
Ունէք Բաղրամեան,
Ունէք հանճարեղ ու մեծ Ստալին,

Որ ինչպէս անխոնջ ու յամառ դարբին՝
Ծփում է անվերջ իր մուրճը սալին
Ու սովետական ձեր բորբ քուրայից
Նետում է կայծեր ողջ տիեզերքին...

Ու պիտի ջնջէք դուք սեւ ֆաշիզմի՞ն.
Դէ՛հ, այնպէ՛ս ջնջէք,
Որ ապագայի լուսաւոր շեմքին
Էլ երբե՛ք, երբե՛ք
Չլինի ոչ մի ստրուկ ու ծառայ,
Չլինի արքա՛յ,
Ու լինի վճիտ ջուրի պէս զուլալ
Կեանքը՝ դեռ գալի՛ք մեր սերունդների...

Եւ լինի՛, լինի՛,
Հանուր մարդկութեան երազը պայծառ
Լինի սալարկուած ու լայն ծառուղի.
Եւ լինի՛, լինի՛
Աշխարհի վրայ արեւ մի արդար,
Եւ լինի մարդը մարդին հաւասար,
Ու խաղաղութեան ճերմակ աղաւնուն
Զմերձի ոչ մի գիշատիչ թռչուն...

Լինի մարդկութեան երազը պայծա՛ռ,
Եւ ով յետ դառնայ լուսեղէն ճամբից,

Ինչպէս առասպել Ղովտի հէքեաթում՝
Դառնայ անշունչ քա՛ր...

Կը ջնջէք շուտով,
Ջնջել էք արդէն արդար բռունցքով
Որջում գալարուող Փաշիստ հրէշին.
Կը մնայ շուտով այս արեւի տակ
Նրա չար թաթից
Ու սեւ ստուերից՝ լոկ սեւ յիշատակ։

Դաշնակ չներէ՞ն.
Ջնջելը նրանց այնքա՛ն է հեշտին.—
Ո՛չ ռումբ է պիտոյ եւ ոչ էլ սուին,
Եւ ոչ էլ, ոչ էլ, օ՛ Գէորգ Աբով,
Հարկ է երկնքում շողացող աստղին
Տիղմ գցել ափով...

Բա՛ւ է աշխարհում անվերջ թափառող
Հարազատներին
Հայրենի երկրում տալ մի պատառ հո՛ղ.
Թէկուզ եւ փոքրիկ, թէկուզ եւ խոպան,
Թէկուզ եւ լինի նա մութ գերեզման,
Տալ մի պատառ հո՛ղ,
Որպէս զի օտար ու ցուրտ հողերում
Մեր մեռելների հոգին չմսի.

Տալ մի պատառ հո՛ղ,
Որպէս զի դողդոջ մեր մանուկների
Վարդ շրթների վրայ,
Ինչպէս ձիւներում ընկած ծաղկի փերթ՝
Զատուի բարբա՛ռը մեր հնօրեայ...

Ջնջել հե՞տքն իսկ մեր.
Բայց ի՛նչ է արդէն կեանքը մեզ համար,—
Զարչարանքի բե՛ռ,
Ու ճակատագրի քառուղիներում,
Կեանքը մեզ համար՝
Անարիւն կռի՛ւ ու լռին մաշո՛ւմ։
Խփել է արդէն մեր կարկամ ուսին
Բռունցքը բախտի.
Ու նորի՞ց բռունցք, ու նորի՞ց արիւն,
Եւ այն էլ, այն էլ երկրի՞ց հայրենի...

Իսկ մենք, օ՛, գիտե՞ս, երջանիկ Աբով,
Թէ հիմա ցրուած աշխարհում անծէր,
Մէն մի հայ սրտի մէն մի տրոփով
Սպասում ենք դեռ
Հայրենի երկրի կանչին քաղցրալուր.
Սպասում ենք լուռ, տրտում ու խռով,
Ներկան՝ մեզ համար տառապանքի ծո՛վ,

Մեխուած մեր սրտին՝ անցեալը սուր սեպ,
Եւ ցուրտ ապագան, խաւար ու անյայտ,
Գողգոթաների կատարին ցցուած
Մեզ համար ցաւի մի նոր խաչափայտ:

Կորցրել ենք արդէն մեր հոգին պայծառ,
Երազները վառ,
Հայրենի հողի շունչը խնկաբոյր,
Մեր օճախների բարքերը մաքուր.
Եղել ենք ահա
Անկուշտ գայլերին պատրաստի նոխազ.
Գալիս են նրանք, գայլերն այդ ծպտած,
Խօսում դրախտից, երկնքից անհաս,
Եւ քաղցրաշողոմ ժպիտով անուշ,
Բառերով քնքուշ՝
Պոկում մեր մարմնից փերթեր անխնայ.
Խօսում են խաչից եւ խաչի անուամբ
Մի հե՛ղ էլ խաչում մեզ խաչի վրայ...

Գալիս են ծածուկ կաբինէտներից
Մթին խաղերի ակէնտները դեռ,
Բերում յոյսերի բառեր մեղրալից
Ու ոսկւով ծախուող ոսկի երազներ.
Եւ վասն անյագ կիրքերի յագուրդ՝

Իրենց հեռաւոր սակարաններում
Հանում ենք աճուրդ...
Ու որպէս եղբա՛յր գալիս են ոմանք,
Եւ եղբայրութեան խօսքերով վսեմ,
Աչքերում ժպիտ, սրտներում հեգնանք,
Զինում են եղբայրն ի՛ր իսկ եղբօր դէմ...

Ու գիտե՞ս, գիտե՞ս,
Աշխարհում ձգուող մեր ճամբաներին
Դարան են մտել դեռ քանի՛ աղուէս,
Եւ խոնջ ու վաստուժ մեր մկաններին
Կպել են գաղտուկ
Արիւնածարաւ դեռ քանի՛ տզրուկ,
Ու գիտե՞ս, գիտե՞ս թէ կան մեր դիմաց
Անդարձ կորստեան վիհեր լայնաբաց,
Քանի՛ ուղիներ մթին ու խարդախ,
Եւ դամոկլեսեան դեռ քանի՛ սրեր
Մեր գլխին առկախ...

Օ՛ Գէորգ Արով, հեռաւոր եղբայր,
Լսե՞լ ես արդեօք
Թէ ծովերից դէն, աշխարհում անծայր
Ունես բիւրաւոր եղբայրներ անոք,
Լսե՞լ ես նրանց պայքարի մասին

Ապրելու համար, մեռնելու համար...
Լսե՞լ ես նրանց բորբ սրտի մասին
Եւ նրանց սիրոյն՝ լեռայ հաւասար.
Լսե՞լ ես ապա նաեւ այն մասին,
Թէ ամէն մի հայ սիրով մի խնդուն,
Լինի նա Հնչակ, լինի Պոլշեւիկ
Եւ կամ Դաշնակ Շուն՝
Կը նետէ՛ր բոլոր օրերը գալիք
Բախտի նժարին,
Եթէ փոխարէն, նժարում միւս
Գէթ լինէր մի՛ օր, օ՛, մի՛ օր, մի՛ օր՝
Հայրենի երկրում մեր Խորհրդային...

Ջնջել հետքն իսկ մեր, դաշնակ չներիս,
Նետել մեր աչքին վառօդ ու արճիճ,
Եւ ողջ աշխարհին ողջոյններ տալիս
Լոկ մե՛ր ականջին ատելութեան ճի՞չ...

Թէ կայ մեր բախտի մատեանում անտես
Որ էլի՛ մի հեղ մենք լինենք զոհուող
Լինի՛ թող այդպէս.
Լինի մեզ համար անվախճան զրկանք,
Եւ մահը նորից լինի մեզ նոր կեա՛նք,

*Միայն թէ լինի՛, օ՜ լինի՛, լինի՛,*
*Մեր մանուկների եւ մեր որբերի,*
*Եւ որպէս շնորհ՝ մեր մեռելների*
*Շիրիմի համար, օ՜ լինի՜, լինի՜՝*
*Պատառ մի չոր հող երկրում հայրենի...*

Եկել եմ ահա — պօէտ մի չնչին,
Որպէս աշունից պոկուած մի տերեւ,
Եկել եմ ահա
Որպէս խոնջ կռունկ մի ժայռի վերեւ,
Եկել եմ ահա — պօէտ մի չնչին
Եւ խառնած շունչս բիւրերի շնչին՝
Երգում եմ նրանց
Ցաւվքը խորին եւ վիշտը անանց.
Լսիր իմ երգում անամոք թախիծ,
Եւ պանդուխտի լաց,
Եւ սիրոյ արցունք լսիր իմ երգում,

Լսիր լեռնացած կարօտ իմ երգից
Եւ նահանջական պայքարի զղջո՛ւմ...
Եւ լսի՛ր, լսի՛ր,
Ինձ հետ միասին լալիս է անյոյս
Մի ողջ ժողովուրդ,
Որի կէսն արդէն տարել է մի օր
Աղեռնը անգութ —
Յիշո՞ւմ ես, Դէր–Զօր...
Ու կէսը ցրիւ հողմերի բախտին,
Կանչում է ահա այս գորշ Հալէբից,
Բուրգերի երկրից, Բարիզից կանչում,
Ու դեռ հեռաւոր Կալիֆորնիայից,
Եւ Մարմարայի ափերից տրտում,
Կանչում երկնքին, կանչում Աստծուն,
Դժոխքի՛ն կանչում՝
Որ տանեն, տանեն, տանե՛ն դէպի տուն...

Եկել եմ ահա — պօէտ մի չնչին,
Եւ կարօտահար իմ եղբայրների
Տաք սի՛րտն եմ բերել իմ հայրենիքին,
Որպէսզի սրտից հայրենի երկրի
Բորբ մեր սրտի դէմ սառոյցը ճաքի,
Ու սառոյցի տակ, ինչպէս ձնծաղիկ
Բացուած արեւին,

Եւ ինչպէս քնքոյշ ու կարօտած մայր՝
Իր սիրտը բացի
Բոլորի՛ հանդէպ, բոլորի՛ համար...

Եկել եմ ահա — պօէտ մի չնչին,
Եւ որպէս ծովում խեղդուողի կանչ,
Ընկլուզուող նաւի եղերական սոյլ,
Աշնան մշուշում պլպլան ճաճանչ,
Եւ հողմերի դէմ առկայծող նշոյլ,
Եկել եմ ահա — պօէտ մի չնչին՝
Նետում եմ երկրիս իմ երգը վերջին.—
Տուել եմ ջրին, տուել եմ հովուն
Ինչ կեանքն էր դիզել իմ ջահել հոգում.
Ե՛ւ ուղեղիս մէջ օրերի դարսած
Գիտութիւնը բութ,
Ե՛ւ սրտիս նստած յոյզը լայնաշերտ
Լոկ պատրանք եւ սուտ,
Նետել եմ հեռու՝ որպէս հոգու կե՛ղտ...

Իմ հոգին հիմա, մրրիկների դէմ
Ճարճատող քնար,
Որին փաթթել է անցեալը դժխեմ
Որպէս հնչուն լար՝
Մ իլիոն զոհերի ալիքները պիրկ.

Դա՛րն է մղկտում լարերի վրայ
Ու ողբն իր նետում զարկերին գալիք.—
Հասել է ահա բոպէն գերագոյն,
Կեանքի եւ մահուան արարը վերջին.
Չկա՛յ մեզ համար ուրիշ փրկութիւն
Քան մեռելների սեւաբախտ ուղին,
Որ ձգւում է տաք անապատներից,
Անցնում մեր սրտից
Եւ հասնում ի քե՛զ, եւ հասնում ի քե՛զ,
Իմ լուսապայծառ, կարմի՛ր հայրենիք...

Չունեմ ես հիմա եւ ո՛չ մի աստուած,
Ու ստապատիր ո՛չ մի ոսկի հորթ,
Ես, կեանքի հովտում յոգնաբեկ անցորդ
Եւ միրաժների խաբուած ուղեկից...
Մաշել է սիրտս, մաշել է հոգիս
Առօրեայի պաղ խարտոցների տակ.
Չկայ ինձ քաշող եւ ոչ մի մագնիս
Բացի քո աստղից վառ ու շողարձակ...

Իսկ դու հեռաւոր, երջանիկ ընկեր
Օ՛ Գէորգ Աբով,
Հոգուդ մէջ դիզուած այդ մաղձը դեղին
Յանձնիր Զանգուի ցասկոտ ջրերին.

Խփի՛ր ականջիդ թմբուկը արթուն
Որպէս զգայուն
Ու յարաթրթիռ մի տխաբազօն
Հայրենի հողի տրոփուն կրծքին.
Լսիր դու հողին, լսիր դու հողին,
Դու հողի՛ն լսիր,
Եւ նա քեզ կ՚ասի, թէ չկայ խտիր
Իր զաւակների միջեւ տարազիր,
Թէ չկա՜ն չներ,
Թէ հայ դեղջուկին սիրտն ի վեր ցցուած
Չկայ մաւուզեր,
Այլ կան բիւրաւոր տառապող սրտեր՝
Նո՛յն հողի համար,
Եւ կան սրտերում վրէժի լեռներ՝
Նո՛յն եւ միեւնոյն ոսոխի համար,
Եւ հոգիներում սիրոյ ջրվէժներ՝
Միայն ձե՛զ համար,
Ո՜վ հայրենիքում ապրող եղբայրներ,
Միայն ձե՜զ համար...

*Եւ միայն, միայն, միայն քե՛զ համար՝*
*Հէյ ջա՜ն Երեւան,*
*Մշուշների մէջ կորսուած իմ եար՝*
*Հէյ ջա՜ն Երեւան,*
*Ու խոյանքներիս դու վերջին կայան՝*
*Հէյ ջա՜ն Երեւան,*
*Իմ առաջին սէր ու վերջին տենչանք՝*
*Հէյ ջա՜ն Երեւան,*
*Մտքիս խանձարուր ու սրտիս պատանք՝*
*Հէյ ջա՜ն Երեւան...*

Հէյ ջա՛ն Երեւան,
Գուցէ այս օտար երկրից աքսորի
Հոգիս Արաքսին երբեք չհասնի,
Ու այգարացի շողերից առաջ
Ինձնից մնայ լոկ թեւաբեկ մի խաչ,
Ու երազներիս պալատը մարմար
Դառնայ մի դաշտում անտէր շիրմաքար·

Հէյ ջա՛ն Երեւան,
Գուցէ հող դառնամ չհասած հողիդ,
Դառնամ յիշատակ ու դառնամ աճիւն·
Բայց մինչեւ կեանքիս նշոյլը յետին,
Ու վերջին շունչիս թրթիռը վերջին՝
Հոգիս քեզ համար կ՚երգի օրհնութիւն,
Կ՚երգի ծովացած հասկերն արտերիդ,
Աստղերի դագաղ Սեւանդ վճիտ,
Գործարաններիդ զանգուածը մեծղի
Ու բանուորներիդ քրտինքը կ՚երգի·
Հէյ ջա՛ն Երեւան։

Հէյ ջա՛ն Երեւան,
Լինեմ մինչեւ հող ու դառնամ մոխիր՝
Կ՚երգեմ բորենու սուր ատամներից
Մարմինդ պահող դրօ՛շդ կարմիր...

Կ՚երգեմ լուսաշող ու պայծառ ներկադ,
Եւ մեր անցեալի աւերակներից
Կ՚երգեմ բարձրաշող շքեղ ապագադ,
Հէյ ջա՛ն Երեւան...

Հէյ ջա՛ն Երեւան,
Լինեմ ես քնած թէ լինեմ արթուն,
Հէյ ջա՛ն Երեւան,
Զարկերը սրտիս տրոփ առ տրոփ,
Հէյ ջա՛ն Երեւան,
Կ՚երգեն քեզ համար միայն օրհնութիւն...

Միայն օրհնութի՛ւն, միայն օրհնութի՛ւն
Եւ սէ՛ր ու կարօտ
Սէ՛ր եւ օրհնութիւն՝ հէյ ջա՛ն Երեւան.—

Հէյ ջա՛ն Երեւան.
Արեւը պայծա՛ռ երկնքիդ վրայ,
Արարատը քեզ լինի պահապան,
Այգիներիդ մէջ որթը մեղրանայ,
Երդիկներիդ տակ ծիծաղն անպակաս,
Դէզերը հունձքիդ հսկայ լե՛ռ դառնան
Ու յաւէրժի դէմ յաւէտ շէն մնան՝
Հէյ ջա՛ն Երեւան։

Հէյ ջա՜ն Երեւան.
Ձմեռների դէմ միշտ դալա՛ր մնաս
Ու պայքարներում մնաս յաղթակա՛ն,
Բռունցքդ չարին լինի պատուհաս,
Եւ զաւակներիդ համար հեռաւոր
Դու լայնաբաց գի՛րկ դառնաս մայրական
Եւ հեռուներից երգես մեզ օրօր՝
Հէյ ջա՜ն Երեւան...

Հէյ ջա՜ն Երեւան,
Օրերդ անցնին ծափով ու երգով,
Օրօրոցներիդ վերեւ ապագան
Լինի գարնային մեղմ ու անուշ հով.
Քրտինքդ հողիդ օրհնութիւն դառնայ,
Հողդ ոսոխիդ դառնայ գերեզման,
Ու վիշտը սրտէդ ընդմիշտ բացակայ՝
Հէյ ջա՜ն Երեւան...

Հէյ ջա՜ն Երեւան,
Դրօշդ ձեռքիդ միշտ ամուր բռնես,
Մեծ Երազը մեր անվթար պահես.
Գալիքն անցեալին զօդող կապ լինես,
Լոյսի ակերից անյագուրդ ըմպես,
Նայուածքիդ հուրով չարքերը վանես

Եւ հողմերի դէմ անխորտակ կանգնես՝
Հէյ ջա՛ն Երեւան:

Հէյ ջա՛ն Երեւան,
Հող բռնես ձեռքիդ ու դառնայ ոսկի՛,
Ծիլ տնկես արտիդ ու դառնայ կաղնի՛,
Շրթունքդ արեւի ակունքին հասնի,
Արմատդ հողի ընդերքից անցնի.
Աչքերիդ շողից լուսինը խամրի,
Հրճուանքդ մնայ, թախիծդ մեռնի՝
Հէյ ջա՛ն Երեւան...

Հէյ ջա՛ն Երեւան,
Դարերի դիմաց միշտ կանգուն կենաս,
Ու բախտի կոչին յար արթուն մնաս,
Լուսաւոր ճամբէդ անվարան գնաս.
Նախանձ աչքի դէմ ծակող փո՛ւշ դառնաս
Սիրտդ աշխարհին որպէս վարդ բանաս.
Մէկով ցանք անես, հազարով բառնաս՝
Հէյ ջա՛ն Երեւան...

Հէյ ջա՛ն Երեւան,
Մի վայրկեանի մէջ օրով կանաչես,

*Տիեզերքի դէմ փառքով ճաճանչես,*
*Մեր արցունքի մէջ հոգիդ ճանաչես,*
*Հոգուդ ժպիտով մեր վիշտը ջնջես,*
*Մի օր էլ դարձի չեփորը հնչես*
*Եւ պանդուխտներիդ հայրենիք կանչես՝*
*Հէյ ջա՜ն Երեւան...։*

